

# ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ

Ահա նա՝ վարպետի վրձնով անմահացած մեծ բանաստեղծի դիմանկարը, ուր այնքան կենդանի, այնքան հարազատորեն է տրված նրա բոցավառ հոգին: Այս լեգենդար, արծվահայաց կերպարանքն է, որ ավելի քան կես դար ոգեշնչում է մեզ, ապրում մեզ հետ, մեր սրտերում...

Նախ երևում է նա մեզ որպես երազուն մի պատանի՝ հայացքը կապույտ երկնքին հառած, հոգին՝ զանգի ղողանջներով լեցուն: Ապա զինվոր է նա Նաիրյան երկրի արյունոտ դաշտերում՝ շուրջը սպանդ ու մահ: Տեսնում է նա այդ դժոխքը և հարցնում. ինչո՞ւ, մինչև ե՞րբ...

Բայց ահա բանաստեղծի մթագնող աչքերում արտացոլվում, շողշողում է ոտքի ելած ռուս պրոլետարի կովի բոցը, հրով է բռնկվում նրա հոգին, և թախծոտ քնարի փոխարեն շեփոր է նա վերցընում, փառաբանում ըմբոստացած «ամբոխների» ժգևորությունը, կռիվը հին աշխարհի դեմ:

Երգում է նա հեղափոխության առաջնորդին, որը մուժիկի համար հույս ու ապավեն է, Ալիի համար հեքիաթային խալիֆ, իսկ փոքրիկ Իվանի համար՝ պարզապես Լենին քեռի...

Երգում է պոետը իր կիսամեռ Նաիրյան երկրի հարության երգը, երգում է բարձրագոչ, խրոխտ, ոգեշունչ...

Երգի վարպետ է նա, նորարար՝ գրական բոլոր ձևերի մեջ, հայոց լեզուն հնչում է նրա երգերում նոր գեղեցկությամբ, ամենատարբեր ոճերով ու ելևէջներով՝ մերթ քնքուշ և ուրախ, մերթ հզոր ու առնական, մերթ խոհուն, մերթ թախծոտ:

Ընդամենը երկու տասնյակ տարի ստեղծագործեց նա: Բայց կարճ ժամանակամիջոցում թողեց այնքան բազմազան ու շողշողուն երկեր, որոնք միանգամից նրան կանգնեցրին հայ գրականության ամենամեծերի շարքում:

Եվ եթե չփշրվեր նրա պայծառ քնարը, դեռ շատ ու շատ հրաշալիքներ կստեղծեր նա, և այսօր իր ծննդյան 70-ամյակին, իր երազած գանգրահեր մանուկներով շրջապատված, ներկա կլիներ մեծ հանդեսին՝ լիասիրտ, բազմավաստակ ու գոհ:

*Պետք է ասեմ, որ Չարենցը հոկտեմբերյան սոցիալիստական էպոխայի ամենամեծ բանաստեղծն է հայ գրականության մեջ և նա բազմակողմանի կերպով ազդեց հայ գրականության վրա, մանավանդ ռիթմի, լեզվի, տաղաչափության, պոետիկայի կողմից։*

ԱՎԵՏԻՔ ԻՍԱՀԱԿՅԱՆ




# ՀՈԿՏԵՄԲԵՐ 25-26 1917

*(Կրճատ)*

Երկինքը գորշ է։— Պղտոր Նևան
Դանդաղ խփում է իր ափերին,
Եվ մառախուղը ծխանման
Իջել է թանձր։— Պալատների
Մութ ֆասադները մառախուղում
Կարծես ճոճում է մի անտես ձեռք.
Անծայրածիր մի, անսահման երթ
Տարուբերվում է քաղաքում հար.—
Ամենուրե՛ք, օ, ամենուրե՛ք
Եռում է երթը այդ անդադար։—

Երկինքը գորշ է։— Այնտեղ, հեռուն,
Ուր գորշ Նևան է տարուբերում
Իր լայն իրանը ալիք-ալիք,—
Նստել է ծանր ու անառիկ
«Ավրորա» նավը։— Ձմեռային
Անթով պալատն է ահա այնտեղ,
Որպես մի գամփռ, իր դեմ նստել։—
Աճում է ահը։— Սարսափն անդեմ
Դառնում է ծանր ու դժնադեմ
Ու թանձրանում է հետզհետե։—
. . . Այնտեղ, հեռուն,
Այս առյուծներից մի փոքր անդին,
Ուր մառախուղն է դանդաղ քերում
Ամեհի պատերը սենատի,—
Այն անծայրածիր հրապարակում,
Ուր, կարծես հենց նոր լեռից պոկած,
Ընկել է ծանր մի հսկա քար
Ու վերից իր ձեռն է տարածում
Դեպի հեռուներն արքան այն մեծ,—
Այնտեղ ամբոխներ են խռնվել
Եվ, սուր սվիններ կոշտ ձեռներին՝
Դժկամ՝ նայում են պալատներին։
Աճում է ահը, ինչպես փորձանք։—
Օ, դու, կարո՞ղ ես հիմա երգել
Այս մառախուղը թե՛ խոլ, թե՛ վեհ,
Այս լեռնացումը գահակործան...
. . . . . . . . .
Աճում է ահը։ Մառախուղում
Վերջին վայրկյանն է արդեն դողում —
Եվ ծանրության տակ Պետրոս Մեծի
Արդեն ճոճվում է պղնձյա ձին...
. . . . . . . . .
Աճում է ահը։— . . . . . . .
. . . . . . Այնտեղ, հեռուն,
Ուր գորշ Նևան է տարուբերում
Իր լայն իրանը ալիք-ալիք —
Կանգնել է, ծանր ու անառիկ,
Քարե այն տունը։
Վերը, այնտեղ,
Նեղ սենյակներից մեկում, հանդարտ
Նստած է փոքր, աշխույժ մի մարդ։
Հասակը կարճ է։— Աչքերի մեջ
Աննկատելի ժպիտ կա մի.

Նկ. ԱԼԲԵՐՏ ՑԱՐԱԼՑԱՆԻ



Ամբողջ մարմինը միանգամից
Շրջում է նա, երբ նայում է ե՛տ:—
Նա աշխատում է խորասուզված:—
Մեկ-մեկ մարդիկ են մտնում դռնից,
Որին hսկում են երկու կարմիր
Զինվորներ՝ hագած կգեստներ պարզ:
Նա աշխատում է խորասուզված,
Ինչ-որ թեկեր է գրում նա, երբ
Հնչում է կանչը hեռախոսի:
Իր աթոռի hետ նա միասին
Շրջում, առնում է փողը. անշարժ
Մի պահ լսում է. դեմքի վրա
Նստում է hոգսը:— Հետո hանկարծ
Կարծես ցնցում է մի ձեռք նրան.—
«Ավրո՞րա... Ի՞նչ... է՞... չե՞ն hանձնվում...
Արդեն ուզում եք... ի՞նչ... կրակե՞լ...»
Վայրկյանը դար է արդեն թվում:
Նա մտածում է: Ակնթարթ մի
Մնում է hամր:— Հետո hանկարծ
Հպում է փողը շրթունքներին,
Շնչում է ծանր — ու կամացուկ
Հրամայում է·—

«Կ ր ա կ ե ց ե՛ ք»:

## ԳԱՐՈՒՆ

*(Հատված)*

Գարուն, գարուն Երևանում,
Երևանում ահա նորից
Շնչում է խոր, թնդում անհուն
Մի խնդություն ոսկեորիկ...
Ահա կանգնած իրար կողքի
Աբովյանի երկայնքն ի վեր՝
Լույս են խմում գարնան շողքից
Ու կանաչում ծառերը մերկ:
Հիշում ես, սի՛րտ, գարուն մի այլ,
Երբ տնկեցին ծառերն այս նոր,
Երբ մոր բոբիկ մանկանց նման
Նրանք դեռ մերկ, նրանք տկլոր.—
Երբ մեր լուսե մանկանց նման
Այնպես վտիտ, այնպես բարակ—
Դեռ շուրջը սով, դեռ շուրջը մահ—
Շարք կանգնեցին այստեղ նրանք...
Մեր մանկանց պես, տկլոր, վտիտ
Ծառերն այս երբ կեցան հերթի՝
Շատե՞րն արդյոք հավատացին
Նրանց պայծառ առավոտին,—
Տե՛ս ինչպե՛ս են փթթել հիմա
Հասակ առել ու կանաչել—
Տե՛ս, ինչպե՛ս են նրանք աճել
Մեր լուսեղեն մանկանց նման...

## 1956

*Թվական։ Ամառ։*

*Ծաղկաձորի ամառանոցային իր սենյակում, լուռ ու մտախոհ նստած աշխատում էր. Եղիշե Չարենցը։ Նա մենակ էր։ Կինն ու երեխաները մի-երկու օրով գնացել էին Երևան։*

*Հանկարծ դուռը բախեցին։*

*— Խնդրեմ, համեցեք,— ասաց Չարենցը, հայացքը թղթից կտրելով։*

*Դուռը բացվեց և ներս մտան կարմիր վզկապներով մի աղջիկ ու մի տղա։*

*— Բարև ձեզ, ընկեր Չարենց,— ասացին պիոներները, պատվի առնելով։*

*— Բարև, բալիկներս,— ասաց Չարենցը, ակամա ոտքի կանգնելով։*

*— Ընկեր Չարենց,— խոսեց աղջիկը,— մենք եկել ենք ձեզ հրավիրելու մեզ մոտ՝ ճամբար։ Մենք ուզում ենք ձեզ հետ հանդիպում ունենալ՝ խարույկի շուրջը։ Եթե ձեզ համար դժվար չէ...*

*— Հանդիպում խարույկի շո՞ւրջը,— ասաց Չարենցը, մանկական ուրախությամբ համակված։— Ամենայն սիրով։ Իսկ ժամի քանիսի՞ն։*

*— Իննին,— պատասխանեցին երկուսը միասին։*

*— Իսկ ձեր ճամբարը որտե՞ղ է։ Ինչպե՞ս պիտի գամ...*

*— Մենք իններս կգանք ձեզ ուղեկցելու։*

*— Խնդրեմ։ Ամենայն սիրով։*



# ՉԱՐԵՆՑԸ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՄՈՏ

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Դե, ուրեմն, պայմանավորվեցինք։ Ժամի ութն անց կեսին մենք կգանք... Ներեցեք անհանգստացնելու համար,— ասացին պիոներները՝ պատվի առնելով։

— Խնդրեմ, խնդրեմ, սիրելիներս,— ասաց Չարենցը, քայլելով դեպի պիոներները։ Դուք ինձ ո՛չ միայն չանհանգստացրեցիք, այլև մեծ ուրախություն պատճառեցիք։

Պիոներները թափանցիկ ժպիտով նայեցին բանաստեղծին և անչափ ուրախացան՝ նրա ջերմ ու սիրալիր վերաբերմունքի համար։

— Ես ձեզ ինչո՞վ կարող եմ հյուրասիրել,— ասաց Չարենցը, նայելով այս ու այն կողմ։

— Մենք... Շատ շնորհակալություն, ընկեր Չարենց։ Մենք...

— Էլ ոչ մի խոսք։ Սա իմ տունն է, և այստեղ ես եմ ձեր հրամանատարը։ Իսկ հրամանատարի խոսքը կատարում են առանց առարկության։



* * *

Պայմանավորված ժամին պիոներները եկան։ Չարենցը բազկաթոռին նստած, Թումանյանի երկերն էր կարդում։

... Զմրուխտյա անտառի փեշին էր գտնվում այն ճամբարը, ուր գնում էր Չարենցը։

— Այս ի՜նչ հիանալի տեղ եք դուք ապրում։ Կապույտ երկինքը ձեր առաստաղն է, կանաչ ծառերը՝ ճամբարի պատերն են, իսկ հատակը ծածկված է մի գորգով, որ հյուսված է թավիշ կանաչից ու ծաղիկներից։

— Այո, լավ տեղ է,— ժպտալով ասացին պիոներները։

— Լավ ասելը քիչ է,— խոսեց Չարենցը, նրանց թևը բռնելով։

Քիչ հետո, երբ նրանք մոտեցան ճամբարի հրապարակին, պիոներների ամբողջ խումբը ոտքի կանգնեց ու բացականչեց.

— Ողջո՜ւյն ընկեր Չարենցին՝ մեր սիրելի բանաստեղծին։

Այնուհետև լսվեցին շեփորի ձայն և բուռն ծափահարություններ։

— Ողջո՜ւյն, սիրելինե՛րս, ողջո՜ւյն,— ասաց Չարենցը այնպիսի բարձր տրամադրությամբ ու հուզմունքով, որպիսին քիչ էր պատահել նրա կյանքում։

Ճամբարի պետն ու ավագ ջոկատավարն առաջ եկան, բռնեցին Չարենցի ձեռքը և տարան ու նստեցրին նախապես նրա համար պատրաստված տեղում։

Աղջամուղջ էր արդեն։ Մայր մտած արևի փոխարեն, խարույկն ասես մի նոր արև էր, որ ծագում էր գետնի տակից և իր լույսով ֆանտաստիկ պատկերներ նկարում անտառի սաղարթախիտ ծառերին ու լեռներին։

Մինչ խարույկը ճրթճրթոցով վառվում էր, ճամբարի պետը Չարենցի հետ ցածրաձայն ինչ-որ բանի մասին խոսելուց հետո, դարձավ դեպի կարմիր վզկապավորները։

— Սիրելի պիոներներ,— ասաց նա,— մեր ճամբարային խորհուրդը որոշել է ընկեր Չարենցին ընդունել որպես... պատվավոր պիոներ։

Բոլորը ծափահարեցին։

Ապա Լուսիկը, նա, որ գնացել էր Չարենցին հրավիրելու, ալ-կարմիր վզկապը ձեռքին, մոտեցավ սիրելի բանաստեղծին։

— Ընկեր Զարենցին հրավիրելով այստեղ,— շարունակեց ճամբարի պետը,— մենք ցանկանում ենք լսել, թե նա ինչ նոր ստեղծագործություն է գրել ձեզ համար։

Զարենցը երբեք չէր սպասում, թե հանդիպման առաջին իսկ պահից, իրենից «հաշիվ» պետք է պահանջեին գրելիք մանկական ստեղծագործությունների մասին։ Եվ նա, չգիտես պիոներների կրակոտ հայացքի՞ց, խարույկի բոցե լեզուների՞ց, թե՞ իր ներքին կրակից, շառագունեց։

— Սիրելի պիոներներ,— ասաց նա՝ փոքր ինչ շփոթվելով,— ես ինձ այժմ մի տեսակ հանցավոր եմ զգում ձեր առաջ։

Պիոներները, դեռ չկռահելով նրա միտքը, նայեցին իրար։

— Այո, ես զգում եմ, որ պարտք եմ ձեզ,— շարունակեց նա։ — Ինչո՞ւ։ Որովհետև ձեզ համար նոր ու լավ գործեր չեմ գրել։ Որքան էլ ձեր հայրերն ու մայրերը, ավագ եղբայրներն ու քույրերը գոհ լինեն ինձանից, այնուամենայնիվ, դուք լիակատար իրավունք ունեք դժգոհելու ինձանից, քանի որ ձեզ համար տակավին չեմ տվել այն, ինչ պետք է տայի և ինչ շարունակ ցանկացել եմ տալ։ Մի խոսքով, ես ձեզ պարտք եմ մնում։ Գիտե՞ք ինչ,— մի փոքր լռելուց հետո, շարունակեց նա, — կան երեխաներ, որ ունեն այսպիսի սովորություն. համով պատառը պահում են վերջում ուտելու։ Այդ սովորությունը ժամանակին ես էլ եմ ունեցել և այժմ էլ երբեմն այն ի հայտ է գալիս ինձ մոտ՝ այն էլ ոչ միայն ճաշի կամ ընթրիքի ժամանակ, այլև գրելու ընթացքում։ Այո՛, այո՛, գրելու ընթացքում։ Եվ գիտե՞ք, թե ինչպես։ Ես գրելիս միշտ մտածում եմ՝ լավ, նաև դժվարին գործերը, այդ թվում նաև ձեզ համար գրելիքը,— որովհետև մանկական լավ գործ գրելն իրոք շատ դժվար է,— թողնել ապագային։ Ահա հենց այդ «հետո»-ի մեջ է մտնում նաև մի պոեմ, որ այժմ ես ուզում եմ գրել ձեզ համար։ Զարմանալի զուգադիպություններ ու պատահականություններ են լինում կյանքում,— խոր լռության մեջ շարունակեց հնչել Զարենցի ջերմ խոսքը։ — Վաղուց հետաձգված նյութն այսօր կրկին այցի եկավ ինձ և տիրեց իմ ողջ էությանը։ Եվ ես վճռեցի այսօր, ինչպես էլ լինի, գլուխ բերել այն։ Բայց հենց այն պահին, երբ ծովի պես ալեկոծվող մտքերս հազիվ ենթարկվեցին ինձ և ես իմ երգ-մակույկի առագաստը բաց անելով, պիտի առաջ շարժվեի հույզերիս ծովում, դուռը բախեցին։ Դռան այդ բախոցով ես կորցրեցի այն, ինչ հազիվ էի գտել։ Այդ բախոցով իմ մակույկի առագաստը նորից ծալվեց։ Եվ գիտե՞ք, թե ովքեր էին իմ դուռը բախում։

— Ովքե՞ր,— լսվեցին այս ու այն կողմից։

— Ձեր պիոներներից՝ Լուսիկն ու Լիպարիտը, որոնք եկել էին ինձ հրավիրելու այստեղ,— ասաց Զարենցը, նայելով իր ծանոթ պիոներներին։

Լիպարիտն ու Լուսիկը, որոնք իրենց այնքան ուրախ ու երջանիկ էին զգում Զարենցի տանը լինելու, նրա կողմից հյուրասիրվելու և նրան ճամբար ուղեկցելու համար, իրենց վատ զգացին։ Զարենցը, որ այնքան լավ կարողանում էր կարդալ մարդկանց և հատկապես փոքրիկների դեմքին գրված յուրաքանչյուր խոհ, մթնշաղի մեջ տեսավ ծանոթ պիոներներին և զգալով նրանց հոգեվիճակը, շտապեց նրանց դուրս բերել ծանր վիճակից։



— Բայց ես պետք է շնորհակալություն հայտնեմ ինչպես ձեզ բոլորիդ, այնպես էլ հատկապես Լուսիկին ու Լիպարիտին, որոնք եկան, ցրեցին իմ տխրությունը և ինձ բերեցին կանաչ աղմուկի այս աշխարհը։ Այս հանդիպումը,— ասաց նա,— ինձ համար ոչ պակաս կարևոր ու արժեքավոր է, քան մանկական մի պոեմ գրելը։ Այնպես որ, եթե ճիշտ խոսենք, ոչ թե Լուսիկն ու Լիպարիտն են ինձ որևէ բանով պարտք, այլ ես՝ նրանց և ձեզ՝ ամենքիդ։

— Ընկեր Զարենց, կարելի՞ է մի բան ասել,— շիկնած ոտքի կանգնեց Լուսիկը։

— Խնդրեմ, սիրելիս, խնդրեմ,— ասաց Զարենցը՝ հայրական բարեհամբույր տոնով։

— Ընկեր Զարենց, ես ամբողջ կյանքում չեմ մոռանա, որ եղել եմ ձեր տանը և ձեր կողմից հյուրասիրվել։ Բայց ես ամբողջ կյանքումս ինձ

չեմ ների, որ իմ պատճառով դուք կորցրեցիք այն, ինչ դժվարությամբ էիք գտել...

— Օ՜, ի՜նչ ես ասում, սիրելի՛ս: Աշխարհում ոչ մի կորուստ չկա: Բանաստեղծի կորցրած միտքը նման է հերկի մեջ ընկած հատիկի: Այդ հատիկը, որքան էլ կորած համարվի, այնուամենայնիվ, մի գեղեցիկ օր կծլարձակվի ու հանդես կգա: Իսկ երբ հասկը հասունանա, մի հատիկի փոխարեն կստանաս տասնյակ հատիկներ: Այնպես որ, սիրելիս, դո՛ւ էլ, Լիպարի՛տն էլ, ձեզ շատ հանգիստ զգացեք: Գուցե և մի օր էլ այս հանդիպումը ինձ համար դառնա շատ արժեքավոր մի գրվածքի նյութ:

— Իսկ կարելի՞ է ձեզ մի բան խնդրել, — ասաց Լուսիկը, հանցավորի նման շարունակելով տեղի մնալ:

— Խնդրեմ, սիրելիս, խնդրեմ:

— Ընկեր Չարենց, այն, ինչ որ պիտի գրեիք, և մենք ընդհատեցինք, կարելի՞ է, որ պատմեք մեզ:

Խարույկը շրջապատած պիոներներն աշխուժացան և միացան Լուսիկի պահանջին:

— Սա ինձ համար հաճելի անակնկալ է,— ժպտալով ասաց Չարենցը: — Եվ ես, որ շուրջ 25 տարվա գրող եմ, դեռ չեմ լսել, որ մեկն ու մեկը



իր գրվածքի նյութը, գրելուց առաջ, պատմի և դարձնի ընթերցողների սեփականությունը: Բայց այդ առաջարկը ես ընդունում եմ և առիթը բաց չեմ թողնի: Կյանքում, սիրելիներս, ամեն ինչ պատահում է: Եվ եթե այնպես պատահի, որ ես չհասցնեմ գրելու այն, ինչ ուզում եմ, գոնե թող նյութը չկորչի: Իսկ նրանց, ում կհաջողվի ապագայում դառնալ բանաստեղծ, ես թույլ եմ տալիս իմ պատմելիք նյութը գրել, դարձնել մի բալլադ, պոեմ կամ վիպակ: Միայն թե չմոռանան նախաբանում ասելու, որ այդ նյութը իրենց Չարենցն է տվել:

Տիրեց ընդհանուր լռություն:

Չարենցը նայեց ժամացույցին: Տասն անց էր արդեն:

— Իմ պատմությունը,— ասաց նա,— մի փոքր երկար կարող է տևել: Իսկ դրանով, ձեր ճամբարային ռեժիմը հո խախտած չե՞մ լինի:

— Երևակայեցեք, որ խախտած կլինեք, —ասաց ճամբարի պետը:

— Այդ դեպքում,— շարունակեց Չարենցը,— եկեք պատմությունը հետաձգենք վաղվան...

— Չէ՜: Մենք այսօ՛ր ենք ուզում լսել... Մենք քնել չենք ուզում,— ձայն տվեցին պիոներները:

— Չէ, սիրելիներս, այդպես լավ չի լինի,— խոսեց բանաստեղծը մեղմությամբ: — Հանդիպումը՝ հանդիպում, բայց եկեք ընդունված կարգը չխախտենք: Բացի դրանից, պատմելու համար, ես այսօր այնքան էլ պատրաստ չեմ: Եկեք հետաձգենք վաղվան: Դա լավ կլինի նաև այն իմաստով, որ մենք կրկին կհանդիպենք և ավելի լավ կծանոթանանք իրար հետ:

Չարենցի խոսքը շատ էր անկեղծ ու անմիջական: Պիոներները համաձայնեցին:

Քիչ հետո հանդիպման ավարտի շեփորը հնչեց: Չարենցը հրաժեշտ տվեց նրանց, իսկ պիոներները ծափերով պատասխանեցին նրա հրաժեշտին:

Եղիշե Չարենցը ինձ համար մնացել է երիտասարդ, այնպես ինչպես վերջին անգամ տեսա նրան Մոսկվայում: Մենք երեք հոգով՝ Չարենցը, Տիցիան Տաբիձեն ու ես, նստարանին նստած՝ պոեզիայի մասին էինք խոսում: Հիշում եմ, թե ինչպես Չարենցը խոր համոզմունքով պնդում էր, որ պետք է ծառայել ժողովրդին և արվեստին՝ առանց հրաժարվելու ոչ արդարությունից, ոչ էլ իսկական գեղեցկությունից...

Մեռածները մնում են երիտասարդ... Չարենցի բանաստեղծությունները մեզ համար լի են գարնանային կայտառությամբ, հեղափոխության հողմով, հերոսականությամբ, և այդ պատճառով մենք էլ ավելի ենք սիրում դրանք:

ԻԼՅԱ ԷՐԵՆԲՈՒՐԳ

# ԳԱՆԳՐԱՀԵՐ ՏՂԱՆ

Փակում եմ հոգնած աչքերս մի պահ
Եվ տեսնում եմ ես — այնքա՜ն, այնքա՜ն պարզ.—
Գալիք մի գարուն, վառ մի օր ահա,
Երկինքը կապույտ, օրը հրավարս:
Արևը արդեն բարձրացել է քիչ,
Զնգում է օրը, ինչպես երգեհոն —
Ու կապո՜ւյտ, կապո՜ւյտ, կապո՜ւյտ երկնքից
Թափում է կարծես երգ ու խնդություն:—
Ոլորապտույտ ձգվում է շոսսեն
Նոր Երևանից դեպի Արարատ.
Ինչքա՜ն են արդյոք տարիներ հոսել
Մինչև գարնային այս օրը զվարթ:
Շոսսեի երկու կողմերում ահա
Տներ, փողոցներ ու գործարաններ,
Կանաչ պարտեզներ, ծաղիկներ առատ,—
Այդ ո՞վ է արդյոք այսքանը ցանել:
Ընկած են տներն իրարից հեռու,
Գործարանները մեջընդմեջ կեցած,
Ո՜չ ծուխ, ո՜չ փոշի.— և լույս տներում,
Ժիր մարդիկ ահա՝ դեմքերին ծիծաղ:—
Ելած արթնացող քաղաքից՝ ահա
Ոլորապտույտ շոսսեով այդ լայն,
Առջևում կարմիր մի դրոշ պահած՝
Անցնում է վաշտը պիոներական:
Հնչում է նրանց դոփյունը հաստատ,
Թմբուկն է թնդում ռիթմով կորովի,
Անցնում են նրանք քայլերով վստահ,
Աչքերով հստակ, դեմքերով թովիչ:—
Քայլում են նրանք շոսսեով, հետո
Կտրելով այդ լայն, ասֆալտե շոսսեն՝
Անցնում են ահա այն ձորի մոտով,
Ուր աղմկաձայն Զանգուն է հոսում:
Զանգուն է հոսում ներքևում զվարթ,
Հստակ ջրերով անվերջ կարկաչում,
Իսկ այնտեղ ահա — մի հին ցանկապատ
Ու քարեր՝ ընկած կանաչի միջում:—
Քարեր, հի՜ն քարեր, վաղուց մոռացված,
Անանուն, անգիր, ննջում են այնտեղ,
Ուր լռությունն է իշխում ահասաստ
Ու հուշն է թռչում՝ հավիտյան անթև:
Ժպտում է վերից երկինքը կապույտ,
Արևն է կնգում անհուն կնգոցով,
Եվ վաշտն է անցնում քայլերով անփույթ,
Արբած արևի կենսատու բոցով:
Հնչում է նրանց դոփյունը հաստատ,
Թմբուկն է թնդում աշխուժով մի ժիր,
Եվ մանուկների աչքերում նստած՝
Գարունն է ժպտում արևի ուժին:—
Անցնում են նրանք ծիծաղով հնչուն
Այդ անխոս, այդ հին քարերի մոտով,
Նրանց ծիծաղում կյա՜նքն է կարկաչում,
Գարո՜ւնն է կանչում անափ կարոտով:—
Անցնում են նրանք:— Ու նրանց երթից,
Աչքերը հառած քարերին խաղաղ՝
Հանկարծ բաժանվում ու մոտ է գալիս
Մի կապուտաչյա, գանգրահեր տղա:—
Պիոներական փողկապը վկին,
Ոտները մինչև ծունկերը բոբիկ,
Ճակատը բարձր, աչքերը լուսե,
Հագին սպիտակ, կապտերիզ շապիկ,—
Նայում է նա ջինջ, պայծառ աչքերով
Գերեզմանատան քարերին մի պահ
Հետո կարծրացած փոշին է քերում
Նա մի հին քարի վրայից ահա:
Նայում է ապա նա փոշոտ քարին
Աղեղանման հոնքերի տակով...
Գրված է վրան.— «Եղիշե Չարենց,
Բանաստեղծ, ծնված Մակու քաղաքում»:
Կարդում է նա իր աչքերով ծավի,
Ժպտում է, հիշում կարծես ինչ-որ բան,
Քաղում է ապա մի կանաչ բաղեղ —
Ու շարունակում իր թողած ճամփան:
Ծիծաղով հնչուն ու արծաթաձայն
Միանում է նա կրկին շարքերին —
Եվ, հուշի նման հավիտյան անցած,
Մնում է հանդում մի կորած շիրիմ...

. . . . . . . . . . . .

Լսո՞ւմ ես՝ այդտեղ իմ սիրտն է թաղած,—
Կոխոտի՛ր նրան քայլերով քո լույս,
Օ, դո՛ւ, գալիքի գանգրահե՛ր տղա,
Մեր լավ գալիքի ոսկեհե՛ր մանուկ...

*Նկ. ՌԱՖԻԿ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*






ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Սիրում էինք տատիկի հեքիաթները և քնում էինք իլիկի նման բզզացող նրա մեղմիկ ձայնի տակ: Փոքրիկ էինք, հավատում էինք տատիկի հեքիաթներին:

— Պառավը կուժկոտրուկը դրեց կժի տակ: Կուժկոտրուկը կարմիր ծաղիկ է, կրակի նման վառվում է, տունկը փոքրիկ է,— քնի մեջ էլ դեռ լսում էինք տատիկի ձայնը՝ «Կարմիր, փոքրիկ կուժկոտրուկ...»

Գարուն էր: Ամպը դեռ չէր գոռացել:

— Գնացեք, առվի ափերից խոռւկ հավաքեք, բերեք, որ սպասի մեջ գցեմ,—ասաց Նունո մորաքույրը,— շուտ արեք, քանի ամպը չի գոռացել:

Մենք գիտեինք, հենց որ ամպը գոռա՝ խոռւկը կըդառնանա: Հավաքում բերում էինք: Հետո ամպերը գոռում, գոռգոռում էին, և խոռւկը դառնանում էր: Հենց որ խոռւկը դառնանում էր, ծաղկում էին ծառերը: Հիմա էլ է այդպես, բայց մենք չենք տեսնում: Ես ամենից շատ սիրում էի ծիրանի ծաղիկները: Նրանք նման են ձյան մեծ-մեծ փաթիլների, խիտ են և չափազանց հոտավետ: Նրանք բուրմունքով էին լցնում Նունո մորաքրոջ պարտեզը: Պարտեզը բուրում էր թեթև ու թափանցիկ: Հիմա, երբ մտաբերում եմ այս բոլորը, ինձ թվում է, թե նորից եմ փոքրացել, և հիմա Նունո մորաքրոջ միակ կովը նախրից տուն կգա, նա կըկթի և կաթով լի կավե ամանը դեմ կանի շուրթերիս ու առաջվա նման կասի. «Խմիր, Վալո ջան, դու դեռ փոքրիկ ես, քեզ թարմ ու տաք կաթ է պետք», և ես կխմեմ հաճույքից աչքերս փակելով: Երբ ծաղկում էր ծիրանի ծառը, Նունո մորաքրոջ վրայից գարնան հոտ էր գալիս, գարնան հոտ ուներ նաև նրա միակ կովը, նա գարնանը ուրիշ կերպ էր բառաչում: Հավերը կչկչում էին գարնան կչկչոցով: Թոնիրն էլ գարնան ծխով էր ծխում: Իսկ մենք լախտի էինք խաղում: Հենց նոր՝ փափկացած հողի վրա, քիթներս քամի մտած հորթերի նման տրտինգ էինք տալիս: Եվ ամեն ինչից, ամեն տեղից ծիրանի ծաղկի հոտ էի առնում: Ես շատ էի սիրում ծիրանի ծաղիկները: Ես հիմա էլ շատ եմ սիրում, բայց հիմա իմ կոշտացած քիթն այլևս առաջվա նման չի զգում նրա նուրբ բուրմունքը, էլ առաջվա նման չի թրթռում սիրտս, այն նույնպես կոշտացել և պակաս զգայուն է դարձել: Ինչ որ փոխվել՝ իմ մեջ է փոխվել, բնության մեջ ոչինչ չի փոխվել:

Շատ բան է մոռացվել, շատ բան էլ կմոռացվի, բայց Նունո մորաքրոջը և ծիրանի ծաղկի հոտը ես չեմ մոռանա, ինչպես և չեմ մոռանա Ջենոբին, որի մասին հիմա ուզում եմ պատմել: Ջենոբի հայրը Նունո մորաքրոջ տնվորն էր, ապրում էր փոքրիկ սենյակում: Բարձրահասակ, ակնոցավոր, այծի մորուքով մարդ էր: Բաճկոնակ էր հագնում և զոլավոր կոստյում: Մեզանից լավ էր հագնված նաև Ջենոբը: Որտեղի՞ց էին եկել, ովքե՞ր էին նրանք, մենք, երեխաներս, իհարկե, չգիտեինք, միայն հաճախ լսում էինք, որ Նունո մորաքույրը նրան պարոն Կարապետ էր անվանում, իսկ Ջենոբի մորը՝ տիկին Սիրան: Շատ լավ մարդիկ էին: Բայց մեզ բարկացնում էին իրենց մի տարօրինակ սովորությամբ՝ հենց մութն ընկնում էր, Ջենոբին տուն էին տանում և այլևս դուրս չէին թողնում: Չէին թողնում, որ մեզ հետ խաղա: Սկզբում այդ բանը մեզ դուր չէր գալիս, իսկ հետո սկսեց զայրացնել, և մենք միջոցներ էինք փնտրում Ջենոբին «գերությունից» ազատելու: Նունո մորաքրոջ տունը բաղկացած էր չորս սենյակներից, բոլոր սենյակների համար մի ընդհանուր միջանցք կար: Միջանցքի անկյուններից մեկում դրված էր մեր կուժը, մյուսում՝ Ջենոբենցը: Առավոտ շուտ տիկին Սիրանը գնում էր աղբյուրը ջրի, թարմ ջուր էր բերում և ջրով լիքը կուժը դնում իր տեղը: Եվ ահա, մտածեցինք տիկին Սիրանի կուժը կոտրել: Հիշեցինք տատիկի հեքիաթները՝ «Պառավը կուժկոտրուկը դրեց կժի տակ» և որոշեցինք կուժկոտրուկներ դնել տիկին Սիրանի կժի տակ: Եվ այդպես էլ արեցինք: Մի օր էլ քնելուց առաջ մի փունջ կուժկոտրուկ բերեցինք ու դրեցինք Ջենոբենց կժի տակ: Ամբողջ գիշերը, որքան հնարավոր էր, արթուն մնացինք կոտրվող կժի ձայնը լսելու համար, բայց այդպես էլ չլսեցինք, կուժը չկոտրվեց: Մեր վիշտը կրկնապատկվեց, զայրույթը բարկություն դարձավ: Մենք ամեն գիշեր նոր ու նոր կուժկոտրուկներ էինք բերում և, միևնույնն էր, ոչինչ չէր ստացվում:

*Երեկոները Նունո մորաքույրը ինքնաեռ էր դնում և քնելուց առաջ թեյ էինք խմում: Եվ ամեն անգամ Զենոբը նայում էր դռան ետևից ու շուտասելուկի պես կրկնում.*

*— Երկու գավաթ թեյ կխմե՞ն, ամոթ է, ամոթ:*

*Մենք, իհարկե, ամոթից պակասեցրինք գավաթների քանակը, մի գավաթից ավել չէինք խմում, իսկ շուտով բոլորովին հրաժարվեցինք թեյից. մածուն էինք ուտում: Զենոբն այլևս չէր կրկնում իր շուտասելուկը, բայց դրանից էլ ոչինչ չփոխվեց: Նրա ծնողները չէին թողնում, որ նա մեզ հետ երեկոները խաղար: Իսկ ամենաանհանգիստ խաղերը մենք խաղում էինք հենց երեկոները: Այնպիսի աղմուկ ու աղաղակ էինք բարձրացնում, որ ամառվա շոգին Զենոբի ծնողները ստիպված էին լինում պատուհանները փակել Զենոբի վրա, որ մեր աղմուկը չլսի, չանհանգստանա: Բայց նա լսում էր ու անհանգստանում: Նա էլ մեզ նման երեխա էր, չարություն անել էր ուզում, վազվզել էր ուզում, բղավել ու աղաղակել էր ուզում: Ամբողջ մի շաբաթ մեր կուժկոտրուկները տիկին Սիրանի կուժը կոտրել չկարողացան: Եվ ահա, մի երեկո էլ, պարոն Կարապետը Զենոբի ձեռքը բռնած բակ եկավ, նստեցրեց թթենու տակ և հազիվ լսելի ձայնով շշնջաց նրան.*

*— Այդպես, իհարկե, չի լինի: Նրանց բերած կուժկոտրուկները ոչինչ էլ չեն անի. նրանց ձեռքերը կեղտոտ են, եղունգները՝ երկար: Այդպիսի ձեռքերով, երբ կուժկոտրուկ են հավաքում, նրանք վշտանում և թուլանում են կեղտից:*

*Մենք ծածուկ լսեցինք այդ բոլորը և հաջորդ օրը լվացինք մեր ձեռքերը լվացքի օճառով, կտրեցինք երկարած եղունգներս, մաքուր լվացվեցինք, սանրվեցինք: Սամվելը նույնիսկ նոր գոտին կապեց, ատամները աղով մաքրեց ու գնացինք աղբյուրը: Վաղ առավոտ էր. դեռ հարսներն ու աղջիկները չէին եկել աղբյուրը ջրի: Կուժկոտրուկները կարծես հենց նոր լվացվել, մաքրվել, մեզ էին սպասում: Լուռ էր մեր շուրջը, միայն արտույտն էր ճռվողում և ինքը՝ աղբյուրը մեղմիկ մրմունջի նման քչքչում: Այստեղ-այնտեղ, քարերի մեջ, մենք տեսանք կոտրված կժերի խեցիներ, ջրի ակունքում գունավոր ուլունքներ և պղնձյա դրամներ: Սամվելը պոկեց երկու կուժկոտրուկ միայն՝ «Ափսոս են,— ասաց,— տեսեք ինչ մաքուր են, ինչ ուրախ աչիկներ ունեն»: Մենք կռացանք, նայեցինք և իսկապես որ տեսանք նրանց ցողոտ աչիկները, կարծես հենց նոր լաց էին եղել և հիմա ժպտում էին արցունքների միջից: Էլ ինչպե՞ս քաղեինք: Տուն եկանք և օրը ցերեկով դրեցինք Զենոբենց կժի տակ: Երբ մութն ընկավ, Նունո մորաքույրը մեզ պառկեցրեց: Մենք պառկեցինք, բայց չքնեցինք: Համարյա մինչև կեսգիշեր լարված լսում էինք: Քնեցին նաև տնեցիները: Նունո մորաքույրը, որ բոլորից ուշ էր քնում, նույնպես քնեց: Եվ հանկարծ, խորը լռության մեջ մի թմփոց լըսվեց, հետո լսվեց նաև կժից հոսող ջրի ձայնը: Կուժը կոտրվեց: Իմ մարմնովը սարսուռ անցավ: Չգիտեմ ինչու, կծկվեցի վերմակիս տակ: Մենք բոլորս էլ այդպես լուռ մնացինք ու այդպես էլ քնեցինք: Առավոտը շուտ լսեցինք տիկին Սիրանի ձայնը: Նա զարմացած հարցնում էր ամուսնուն՝ «Այս կուժն ինչո՞ւ է կոտըրվել, մարդ»:—«Կուժ է, կոտրվել է»,—պատասխանեց պարոն Կարապետը»: «Կուժը ջրի ճամփին կկոտրվի, մարդ, ինչո՞ւ այստեղ, հաշտի մեջ կոտրվեց: Ինչո՞ւ»:*

*— Ես չգիտեմ ինչու,— պատասխանեց պարոն*



*Կարապետը և անսպասելիորեն ավելացրեց.— Որովհետև Զենոբին չես թողնում, որ տղաների հետ խաղա:*

*— Ա՛ ա՛ ա,— ծոր տվեց տիկին Սիրանը, և մենք այդ բոլորը պարզ լսում էինք,— հիմա հասկացա,— նա ավելի ծայրով խեցիի տակից հանել էր մեր դրած կուժկոտրուկները,— կուժկոտրուկներ են դրել կժիս տակ: Այդ ինչպե՞ս է պատահել, որ այդ կեղտոտ ձեռ-*

քերով տղաների ափերի մեջ չեն մեռել կուժկոտրուկները:

— Նրանց ձեռքերը շատ մաքուր են, իրենք էլ օճառով կլվացվեն: Այնքան մաքուր են, որ տեսնես՝ չես ճանաչեր:

Հետո, շատ հետո միայն մենք իմացանք, որ կուժը կոտրել էր պարոն Կարապետը, որպեսզի մեզ ուրախություն պատճառի: Իմացանք և չբարկացանք, որովհետև այն ժամանակ իսկապես որ նա մեզ մեծ ուրախություն պատճառեց և սովորեցրեց լավ լվացվել ու եղունգներս կտրել:

— Իսկ ինչո՞ւ են այդ ծաղիկը կուժկոտրուկ անվանում,— հարցրեցինք վերջապես պարոն Կարապետին:

— Որովհետև այդ ծաղիկները բացվում են աղբյուրների եզրերին, քարերի միջև, իսկ կժերն էլ որտե՞ղ պիտի կոտրվեն, եթե ոչ ջրի ճանապարհին, քարերի վրա: Կժերը կոտրվում են աղբյուրների մոտ, և խեցիներն ընկնում են կուժկոտրուկների վրա:

Կարմիր, փոքրիկ կուժկոտրուկներ: Կրակի նման վառվող կուժկոտրուկներ: Տունկը փոքրիկ, տատիկիս



կուժկոտրուկներ. ես ձեզ չեմ տեսնում, ինչի՞ցն է այդ, ձեռքե՞րս են կեղտոտ, անլվա՞, թե՞ տարիքս եմ առել ու այլևս աղբյուր չեմ գնում ջրի: Որտե՞ղ եք բացում դուք հիմա ձեր աչիկները, ովքե՞ր են հիանում ձեզնով: Մենք մոռացել, իսկ պատանիները չե՞ն ճանաչում ձեզ: Ի՞նչ է պատահել ձեզ, իմ լավ տատիկի կուժկոտրուկներ:



# Ձախորդը

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Ձեռքը տարավ տանձի ծառին՝
Տանձ չկար:
Ձեռքը տարավ ձիու սանձին՝
Սանձ չկար:
Կարաս գտավ՝
Կարասի մեջ գանձ չկար:



Թե աջ քայլի՝ շեղվում է,
Թե ձախ քայլի՝ նեղվում է.
Առաջ գնա՝ ձորակ է,
Թե ետ գնա՝ կրակ է,

Ոչ ցանում է,
Ոչ ջրում,
Ոչ կարդում է,
Ոչ գրում:



Մատը մատին չի խփում,
Իր քիթն անգամ չի սրբում:
Հավի նման անմիտ է,
Միայն մի բան լա՛վ գիտե,
Թե որտեղ է բաղարջը,
Տատի բերած հաղարջը:
Թե ձեռքն ընկնի շերեփը—
Լավ բացվում է իր քեֆը.
Կուշտ-կուշտ ուտում, ննջում է
Կամ փողոցում շրջում է,

* * *



Այս բոլորի պատճառն ի՞նչ է,
Ծո՛ւյլ է, ծույլ է, խելքն էլ՝ քիչ է:
Երբ վաստակը
Մարդուն խորթ է,
Փանոսի պես
Միշտ ձախորդ է:

## ՏՂԱՆ ՈՒ ԱՇՈՒՆԸ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Առած վրձին, թուղթ ու ներկեր,
Բլուրն ի վեր ելավ Արան:
Բացվեց նրա աչքերի դեմ
Զքնաղագեղ մի տեսարան:

Մասիսի հետ դաշտն է ձուլվել
Մշուշի մեջ ոսկեդեղին.
Արդյոք, այդ ո՞վ է նկարել
Պատկերը այդ հեքիաթային:

Հրդեհվել է դաշտը ասես,
Բայց ծուխ չկա ու չի վառվում.
Օրորվում են ծաղիկ ու սեզ,
Հովի շնչով մեղմիկ պարում:

Հրդեհի մեջ մարդիկ ժպտում
Ու քաղում են ոսկի խաղող,
Ու ծովի պես դաշտն է ծփում
Երանգների նրբին խաղով:

— Դե, վրձին իմ, գործիր արագ.—
Շշնջում է մտքում Արան,—
Էլ ուրտե՞ղ կա արևի տակ
Այսքան շքեղ մի տեսարան:

Պապս ասաց՝ չի ծաղկել մեր
Երկիրն այսպես ոչ մի դարում,
Նկարում եմ աշունն թեև,
Բայց ես պիտի կոչեմ «գարուն»:

*Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*






Դ'ԷՐՎԻԼԻ

**Երկրորդ գլուխ**

### ՊԱՐՏՔ ԵՎ ՔԱՂՑ

*Կրեկը երկար ժամանակ օջախի առաջ պպզած, մի կողմից կրակն էր թեժացնում, իսկ մյուս կողմից մարմնի վրա վազվզող միջատներին որսում:*

*Քարանձավի մուտքի մոտ ոտնաձայներ լսվեցին: Մեկ էլ հանկարծ շնչակտուր ներս ընկավ Օժոն: Նրա աչքերը ուրախությունից փայլում էին: Նա իր հետևից քարշ էր տալիս չաղլիկ ու սևամորթ մի սատկած առնետ:*

*— Կրե՛կ, եղբայրս, ե՞ս եմ սպանել,— բացականչեց Օժոն,— ես, մեն-մենակ, լավ որսորդ կդառնամ, չէ՞...*

*Սպանված առնետը դրեց եղբոր ոտքերի առաջ և ավելի բարձրաձայն գոռաց.*

*— Շու՛տ արեք, ի՛նձ հետևեցեք, այնտեղ՝ վերևում այնքա՞ն առնետներ եմ տեսել, որ պատմել չեմ կարող, վեր կացեք միասին գնանք, դե, շու՛տ... ով ուզում է համեղ ընթրիք ունենալ, թող ինձ հետևի...*

*— Ինչ ես գոռգոռոցդ գցել,— ընդհատեց նրան Կրեկը,— չե՞ս տեսնում բոլորն անտառ են գնացել, ես մենակ եմ:*

*Օժոն շփոթված նայեց շուրջը: Ճիշտ որ մարդ չկար, իսկ ինքը վերադառնալիս հազար ու մի են-*

Սկիզբը՝ «Պիոներ» №8

թադրություններ էր անում, թե ինչպես, լսելով առատ որսի մասին, բոլորը կուրախանան, կգովեն իրեն, իսկ Տոհմավագն ուրախացած նույնիսկ կշոյի գզգզված մազերը։

Մինչև քարանձավում միայն Կրեկն էր մնացել։

Օժոն նորից շտապեցրեց մեծ եղբորը։ Տեղը հեռու չէ, բավական է հասնել կաղնուտ և կհանդիպեն կենդանի առնետներին։

Կրեկը այսօրվա նման քաղցած երբեք չէր եղել։ Հանկարծ նա ոգևորված ոտքի թռավ, առավ կողքին դրված մահակը և ասաց.

— Գնա՛նք։

Բայց մի պահ հիշելով իրեն վստահված կրակը, անմիջապես կանգ առավ։

— Ի՞նչ պատահեց, ինչո՞ւ տեղումդ քարացար,— հանդիմանեց Օժոն։

— Իսկ կրա՞կը,— ասաց մեծ եղբորը,— նայիր, խարույկը նոր է թեժացել, դեռ կարող է հանգչել։

— Մի մեծ խուրձ ցախ գցիր, թող կրակը կըշտանա, բոցերը դեռ չեն հասցնի ցախը լափել, երբ մենք նորից քարանձավում կլինենք։

— Կարծու՞մ ես։

— Իհարկե, ասում եմ հեռու չէ, երեք չորացած տոճինները հիշու՞մ ես, հենց նրանց մոտ է։ Երկուսով այնքան կսպանենք և հետո... տաք արյուն կխմենք։

Տաք արյու՜ն... ինչքա՜ն հիանալի խմիչք է։ Վաղուց Կրեկը տաք արյան համ չէր առել։ Նա նորից մտածեց, նորից տատանվեց։ Բայց Օժոն իրավացի էր, երբ խարույկին մի մեծ խուրձ ցախ ավելացնի, ապա կրակը չի հանգչի։ Որսից հետո իսկույն կվերադառնան և առատ միս կբերեն։ Չէ՞ որ քարանձավում քիչ է մնում բոլորը սովամահ լինեն։

Կրեկը որոշեց այլևս ժամանակ չկորցնել, նա մի մեծ խուրձ ցախ գցեց կրակին և լայն լոքեր անելով հասավ Օժոյին։

Շուտով տղաները անցան սարալանջը և մոտեցան երեք չորացած տոճիններին։

— Նայի՛ր, Կրեկ,— շշնջաց եղբայրը,— առնետների հոսանքից ամբողջ խոտը շարժվում է... ըսկըսե՞նք...

Եղբայրները մահակները վեր բարձրացրին և ընկան առնետների մեջ։ Սկսվեց ջարդը։ Սակայն քիչ անց նրանք ընկան բավականին վտանգավոր դրության մեջ։ Տղաներին ամենուրեք շրջապատում էին կրծողների նորանոր խմբեր, որոնք կենդանի լավայի նման առաջ էին սողում։ Գազազած առնետներից մի քանիսը իրենց սուր ատամները մխրճեցին նրանց բոբիկ ոտքերի մեջ։ Եթե եղբայրներից մեկնումեկի ոտքը սայթաքեր և ընկներ, կատաղած կրծողները իսկույն կհարձակվեին և կհոշոտեին։

Դրությունը քանի գնում ծանրանում էր։ Եվ ահա դժվարին այդ պահին Կրեկի հայացքը ընկավ բարձրաբերձ ծառերին։ Բավական էր մագլցեին ծառը՝ նրանք փրկված կլինեին։ Չնայած եղբայրներն արդեն հոգնել էին, բայց շարունակեցին կյանքի և մահվան պայքարը։ Նրանք մի կերպ ճանապարհը մաքրելով հասան մի մեծ ծառի։ Կրեկը կայծակնային արագությամբ շալակեց փոքրիկ Օժոյին և ճարպկորեն բարձրացավ ծառը։ Եղբայրական գորովանքով Օժոյին տեղավորեց ամենաբարձր ճյուղերից մեկի վրա և սկսեց ուշադրությամբ դիտել շրջապատը։

Հեռու՜, շատ հեռու, ինչքան նրա աչքերը տեսնում էին, ամբողջ հողը ծածկված էր սևամորթ առնետներով։

Հարթավայրի վրա աստիճանաբար մառախուղ իջավ։ Բնությունը խաղաղ էր. միայն լսվում էր արշավող առնետների ձայնը։

Հենց այդ ժամանակ տղաները իրենց թաքստոցից տեսան դեպի ծառը եկող մի հսկա արջի։ Բայց վիթխարի գազանի ճակատագիրը ավելի վատթար դուրս եկավ, քան եղբայրներինը։ Արջի վրա հարձակվեցին գազազած կրծողները, և նա աղիողորմ մռնչալով ու կաղկանձելով հազիվ գլուխն ազատեց։

— Եղբայր,— ասաց Կրեկը,— արդեն ուշ է, մա-



ռախուղը ծածկել է ամեն ինչ, ճանապարհ չի երևում, իսկ առնետները շարունակում են առաջ շարժվել, մենք առայժմ քարանձավ վերադառնալ չենք կարող, պետք է գիշերենք ծառի վրա։

— Ավելի լավ, կսպասենք մինչև առավոտ,— ուրախացավ Օժոն,— ես ոչնչից չեմ վախենում։

Շուտով կրտսեր եղբայրը քնեց, բայց Կրեկը հանգստանալ չէր կարող։ Քարանձավում կրակը մնացել էր անպահապան։ Ախր ինչպե՞ս նա համաձայնեց գալ այստեղ։ Ինչպիսի՜ անմտություն, թեթևսոլիկություն։ Կրեկը հասկանում էր իր հանցանքը և իրեն ներել չէր կարողանում։

Այդ ժամանակ քարանձավում կրակը արդեն հանգել էր Կրեկի մեղքով։

## Երրորդ գլուխ

## ԿՐԱԿԸ ՀԱՆԳԱՎ

Այն պահին, երբ Թուչնորս Կրեկն ու Օժոն միասին մարտնչում էին առնետների անհաշիվ զորքերի դեմ, Տոհմավագը քարանձավի մյուս բնակիչների հետ ուտելիք էր փնտրում անտառներում։ Հազիվ սկսել էին ծառերից չորացած պտուղներ հավաքել, երբ հեռավոր մշուշում ոտնաձայներ լսվեցին։

Փորձված ծերունին մատը տարավ դեպի շուրթերը և զգուշացրեց լռություն պահպանել, իսկ ինքը լարեց լսողությունը։ Երկարականջ Ռյուգը գլուխը դրեց հողին։

— Հը՞, Ռյուգ,— հարցրեց Տոհմավագը։

— Մարդկանց ոտնաձայներ են։

— Մի՛ անհանգստացեք, մերոնք են։

Կանայք և երեխաները ուրախությունից սկսեցին բացականչություններ անել։ Բայց ծերունին սաստեց նրանց.

— Լռե՛ք, որսորդները գալիս են դանդաղ և ծանրաքայլ. նշանակում է նրանց բեռը ծանր է, բայց ի՞նչ են բերում... գուցե մարտում վիրավորված որսորդի... գուցե, ասենք չարժե գուշակել, հիմա կպարզվի։

Վերջապես հեռվում մարդիկ երևացին։ Մայրերի սրատես աչքերը իսկույն ճանաչեցին ամուսիններին և եղբայրներին։

— Մերո՜նք են, մերո՜նք,— գոռացին նրանք։

Երեխաներն ուրախությունից սկսեցին թռչկոտել, բայց ծերունին նորից սաստեց, ապա վեր բարձրացնելով եղջերուի կոտոշներից պատրաստված և զանազան քանդակներով զարդարված տոհմապետական գավազանը՝ եկողներին ընդառաջ գնաց։

Որսորդները ողջունեցին ծերունուն, իսկ հետո մանրամասն պատմեցին հեռավոր անտառներում կատարած արշավի մասին։ Ծերունին իր հերթին հայտնեց նրանց բացակայության ժամանակ տեղի ունեցած դեպքերի մասին։ Այս անգամ որսը անհաջող էր։ Տղամարդիկ հազիվ կարողացել էին հայթայթել հյուսիսային մի եղջերու և մի վայրի ձի։ Վայրի թռչուններ չէին ճարել։

Տոհմավագը տղամարդկանց հաղորդեց, որ քարանձավում մնացած բնակիչները չորս օր է ոչինչ չեն կերել, և առաջարկեց բերած ավարից իսկույն ևեթ նրանց բաժին հանել։ Ծերունին խիստ քաղցած էր և ուտելիքից բացի ուրիշ այլ բանի մասին չէր մտածում։

Մսի փոքրիկ կտորները անմիջապես բաժանեցին, և ծերունին կուլ տալով համեղ պատառները, մոռացել էր այդ ուրախ խնջույքից բացակայողներին՝ Կրեկին և Օժոյին։

Երբ արդեն մի քիչ կշտացան, բոլորը մտածեցին քարանձավ վերադառնալու մասին։ Հոգնաբեկ որսորդները այժմ երազում էին միայն ապահով հարկի տակ, տաք մոխրի կամ փափուկ մորթիների վրա պառկելու մասին։

Արդեն ուշ գիշեր էր, երբ բնակիչները մոտեցան քարանձավին։ Սովորաբար դեռ հեռվից միշտ երևում էր նրանց բնակավայրը լուսավորող կարմրավուն բոցը։ Բայց այս անգամ ամենուրեք խավար էր։

Ժայռի ստորոտում խումբը կանգ առավ։ Մեծահասակները իսկույն հավաքվեցին և սկսեցին խորհրդակցել։

«Ի՞նչ կարող է պատահած լինել իմ բացակայության ժամանակ»,— մտածեց Տոհմավագը։

— Խարույկի պահապանն այսօր Կրեկն է,— բարձրաձայն ասաց նա,— հարկավոր է զգուշացնել։

Որսորդներից մեկը վզից կախած ոսկրե սուլիչով ազդանշան տվեց։ Սակայն նրան չարձագանքեցին։



— Նշանակում է,— շշնջաց ծերունին և սիրտը դողաց,— նշանակում է... Կրեկը մեռել է... Երևի օտար ցեղեր են հարձակվել...

— Ո՛չ,— ընդդիմախոսեց ավագներից մեկը,— չի կարող պատահել, մեր շրջակայքում վաղուց ուրիշ ցեղերի որսորդներ չեն երևացել, Կրեկը և Օժոն երևի անհոգ քնած են։

Մութը լուսավորող բոցերի չերևալը նրանց սկզբում զարմացրեց, բայց երբ համոզվեցին, որ կրակը հանգել է, իսկույն ահավոր տագնապ տիրեց մարդկանց սրտերում։

Եվ միայն այժմ հասկացան, թե ինչ էր նրանց սպասում։ Եթե երեխաներից մեկնումեկը զոհվեր՝ այնքան ծանր դժբախտություն չէր նրանց համար, բայց երբ կրակն է հանգել, նրանց միակ մխիթարողը, դա արդեն սոսկալի էր։

Նրանք գիտեին մի կարևոր օրենք։ Եթե մեռել է կրակը, ապա պետք է մեռնեն նաև մարդիկ։

Երբեք այդպիսի ահավոր դժբախտություն չէր եղել։ Քարանձավի բնակիչներից ոչ ոք չէր հիշում, թե որ ժամանակներից և ով էր բերել հավերժական ջերմությունը։ Դրա համար էլ նրանցից ոչ մեկը չէր պատկերացնում կյանքն առանց կրակի։

Ծանր հուսահատություն տիրեց քարանձավի դժբախտ բնակիչներին։

Բազմաթիվ անգամ Գելը և Ռյուգը ցեղի ավագներին հայտնել էին, որ թորենիներն ու սոված գայլերի ոհմակները թափառում են քարանձավի շրջակայքում։ Եվ միայն խարույկի բոցն էր նրանց հեռու պահում մարդկանցից։ Իսկ հիմա, երբ հանգել է կրակը, կատաղի գազաններն անպայման կհարձակվեն։

— Առա՛ջ,— կերկերուն ձայնով հրամայեց Տոհմավագը։

Տղամարդիկ երեխաներին և կանանց թողեցին լեռան ստորոտում, իսկ իրենք զենքերը պատրաստ պահած, բարձրացան քարանձավ։

Քարանձավը դատարկ էր։ Խավար էր ու ցուրտ։

Գելը ծնկաչոք, երկար ժամանակ փչում էր, որ օջախը բոցավառվի, բայց իզուր։ Կրակը հանգել էր, ընդմիշտ հանգել։

Զարմանալին այն էր, որ կրակի հետ միասին անհայտացել էին Կրեկը և Օժոն։ Այդ ·ահավոր լուրը լեռան ստորոտում սպասող մայրերին և քույրերին հասցրեց Գելը։

Տոհմավագը հրամայեց բոլորին քարանձավ բարձրանալ։ Հավաքվեց ամբողջ ցեղը։ Նրանք, հուսահատված, չէին կարողանում զսպել իրենց արցունքները, իսկ ոմանք ահավոր լշտից գետին տապալվեցին։

Հոգնաբեկ և տանջված մարդիկ վշտից իսկույն մրափեցին։ Չէին քնել միայն ծերունի Տոհմավագը, երկարականջ Ռյուգը և ծկնորս Գելը։

Ամբողջ գիշեր սառը օջախի առաջ նստած, Տոհմավագը խորհում էր, թե ինչ անել, ինչպես վերակենդանացնել կրակը։ Մտածում էր, մտածում, բայց ելք չէր գտնում։ Նա զառամյալ էր և հնարագիտությունն արդեն կորցրել էր։ Նա այլևս չէր կարող ցրտից ու խավարից փրկել իր դժբախտ ընտանիքը։

(Շարունակելի)



Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

# ՇՀԱՐՍՏԱՆԻ ԿՃՈՒՃԸ ԵՎ ՄՆԱՑԱԾ 3000-Ը

Նկ. ՌԱՖԻԿ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ



ԼԻԴԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Ուղիղ 12 տարի առաջ Շհարստանի (Ղարաբուլաղ) տրակտորիստ Գևորգի քլունգը, այգին վարելիս, դեմ առավ մի կճուճի: Կճուճը, իհարկե, ոսկով լցված չէր, ինչպես հեքիաթներում, բայց մեծ էր, թթու դնելու համար՝ հարմար:

8 տարի վայելեց տրակտորիստը իր «գանձը»: Մի օր էլ նրա դուռը ծեծեցին ինչ-որ երեխաներ: Ասացին, որ իրենք Սիսիանի № 1646 էքսպեդիցիոն ջոկատի անդամներն են, հնագիտական թանգարան են ստեղծում և խնդրում են կճուճը թանգարանին նվիրել:

Որտեղի՞ց էին իմացել այդ մասին: Բայց ճարն ինչ, գյուղացին տվեց, ու 1963 թ. հիմնադրված հայրենագիտական թանգարանի առաջին ցուցանմուշը Շհարըստանի կճուճը եղավ:

· Ջոկատի առաջին էնտուզիաստները՝ Ցոլվարդ Գևորգյանը, Գայանե Եղիազարյանը, Վասպուր Ավչյանը, որ առաջին ցուցանմուշը բերեցին թանգարան, այժմ ավարտել են դպրոցը: Բայց մնացել է թանգարանը պիոներտանը կից և օր-օրի հարստանում է: Սա Հայաստանի ամենահարուստ հայրենագիտական թանգարանն է, որ ստեղծվել է դպրոցականների նախաձեռնությամբ և ունի 3000-ից ավելի ցուցանմուշ:

Հետո մեծ կճուճի կողքին դրվեցին ավելի փոքրերը, բայց ավելի մուգ-սևավուն ու սիրուն, որ բերվեցին Տաթևգէսի շինարարության Տոլորսի, Շամբի տեղամասից: Հայաստանի պետական թանգարանը դրանցից մի քանիսը վերցրեց, բայց նրան ավելի շատ հրապուրում էին Փիլիպոս 4-րդի դրամները (4-րդ դար):

Ուզ գյուղի դպրոցականները դպրոցի շրջակայքի լքված պատի միջից գտան Անգեղակոթի երկդասյան դպրոցի կլոր կնիքը: Վրան թվական կար՝ 1882:

Ամենահարուստ հավաքածուն ունեցող հնագետի նախանձը կարող են շարժել հայկական թալիսմանը, ուրարտական ժամանակաշրջանի զարդերը (գտնվել են Տոլորսում), կնոջ կերպարանքով հայկական սֆինքսը:

Էքսպեդիցիոն ջոկատը ղեկավարում է ինքը՝ հայրենագիտական թանգարանի վարիչ Ալբերտ Ավետիսյանը: Հայոց լեզվի և գրականության ուսուցիչը սիրով է խոսում իր ջոկատի անդամների մասին, որոնք հավաքել են 1600 տեսակի նամականիշեր, Սիսիանի շրջանի հարյուրավոր ծաղկի ու ծառի տեսակներ: Այդ ծառատեսակներից պատրաստված բազմաթիվ իրեր կան: Վերջերս Ախլաթյան գյուղի երեխաները թանգարանին են հանձնել տանձենու փայտից պատրաստված հրացանի յուղաման և թուր:

Թանգարանի մի անկյունն էլ զբաղեցնում է քաղաքացիական կռիվներին նվիրված բաժինը: Ջոկատը նոր, անհայտ հերոսների մասին տեղեկություններ

# ՀԵՂԿՈՄՆԵՐՆ ՈՒ

ՍԵՐՈԲ ՍԱՐԳՍՅԱՆ



այաստանի պատանի կոմունարներ (պատկոմ) կազմակերպությունը 1921 թվականին ուներ իր թատրոնը Երևանում և գավառներում: Երևանում գործող թատերախումբը բաղկացած էր մեծահասակներից՝ պատկոմական հրահանգիչներից, իսկ գավառներում՝ պատանիներից, երբեմն նաև խառն:

Երևանի թատերախումբը բնական է, համարվում էր մայր թատրոնը: Նա Սունդուկյանի անվան թատրոնի նման, ուղղություն էր տալիս մնացած խմբերին: Այդ թատրոնում ընդգրկված էին թատերական գործը սիրող ու այդ գործում ընդունակություն ցույց տված երիտասարդներ, որոնցից երկուսը համարվում էին անվանի դերասան Վարդան Միրզոյանի ստուդիայի սաները՝ Երվանդ Խալեյան, Վարդան Աճեմյան (այս վերջինը գործում էր Լե-

է հավաքում, նամակների ու նյութերի հետքերով հերոսների տուն գնում:

Պիոներների կատարած այդ հայրենանվեր աշխատանքի համար է, որ անցյալ տարի երեք հոգու Բրեստ ուղարկեցին՝ էքսպեդիցիոն ջոկատների համամիութենական արշավին մասնակցելու համար:

Նրանց արշավների մասին չիմացողը կարող է կարդալ ալբոմներից մեկը, ուր նկարագրված են տուրիստական և հնագիտական արշավներից ստացած տպավորությունները: Հաճախ էլ արշավից վերադառնում են մի պատմվածք, լեգենդ կամ բանաստեղծություն գրելով ալբոմում: Ու ակամա ծնվում են բանաստեղծներ: Երեխաները ավելի ռոմանտիկ ու ընկերասեր են դառնում, հայրենի երկրի, նրա հարստությունների, գեղեցկության, նրա հերոսական մարդկանց, նրա հնությունների նկատմամբ ավելի մեծ սիրով լցվում:

Իսկ ամենահետաքրքիրն այն է, որ № 1646 էքսպեդիցիոն ջոկատի կինոսիրողները իրենց գործերը նկարահանել են ու ֆիլմ ստեղծել:



**Մանկական երգիծանք**

* * *

Մելինեն վազելով գալիս, փաթաթվում է հայրիկին.

— Գիտե՞ս, հայրիկ, թվաբանությունից «չորս» ստացա, բայց ոչ միանգամից:

— Հապա ինչպե՞ս:

— Մի հատ «երկու» ունեի, մեկն էլ այսօր եմ ստացել:

* * *

Արդեն ուշ է, բայց Հարութիկը դեռ չի քնել և շարունակում է խանգարել հյուրերին: Ճարահատ, հայրիկը որոշում է անձամբ քնեցնել երեխային և ձեռքից բռնելով տանում է ննջարան: Քիչ անց, ննջարանի դուռը բացվում է և գիշերանոցը հագին երևում է Հարութիկը, մատը՝ շուրթներին.

— Սս՜... հայրիկին քնեցրի:

* * *

— Նունիկ, հինգ խնձոր ունես, երկուսը կերար: Քեզ քանի՞ հատ է մնում:

— Հենց այդ երկուսը: Մյուսները Ռուբիկը կխլի՜:

ՏԻԳՐԱՆ ԴԱՐԲԻՆՅԱՆ

նինականի խմբում): Երվանդ Խալեյանը ղեկավարում էր Երևանում գործող թատերախումբը: Խմբի անդամներն էին Հրանտ Մանվելյանը, Ա. Ներսիսյանը, Գրիգոր Մարգարյանը, Ադո Ադոյանը, Հրայր Իսաբեկյանը, Մարո Մուրադյանը, Հովհաննես Զոդյանը, Արարատ Մարուխյանը, Հ. Բարդյանը, Վ. Հայկազյանը և ուրիշներ: Խմբին մեծ օգնություն էին ցույց տալիս Լևոն Քալանթարը, Միքայել Մանվելյանն ու կոմպոզիտոր Վահան Ումրշատը: Թատրոնի նկարիչն էր Հրայր Իսաբեկյանը:

եսներ գրել պատկոմական կազմակերպության ղեկավարներից մի քանիսը ևս:

Հիշյալ թատրոնը մի կողմից դասական դրամատուրգիայի նմուշներին էր դիմում, մյուս կողմից՝ օրվա հրատապ հարցերն արծարծող պիեսներին, որոնք նույնպես բազմազան էին ինչպես բովանդակությամբ, այնպես էլ ժանրի տեսակետից: Այստեղ դուք կարող էիք դիտել հակակրոնական թեմաներով պիեսներ, պիեսներ սկաուտական կազմակերպության բուրժուական էությունը ցույց տը-

# ՊԱՏԿՈՄԱԿԱՆ ԹԱՏՐՈՆԸ

Ուրախալին այն էր, որ թատրոնը հենց սկզբից գիտակ մարդկանց ձեռքումն էր: Ստեփան Մանուկյանը ոչ միայն ընդհանուր ղեկավարն էր, այլև նրա դրամատուրգը, որի գրչին են պատկանում «Սպարտակ», «Կարմիր գլխարկ», «Ով աշխատի, նա կուտի» և այլ պիեսներ:

Ստյոպա Մանուկյանի օրինակով սկսեցին պիե-

վող, հին կարգերի, բարքերի ծաղրը արտացոլող ու նորը գովերգող թեմաներով:

Ավելի համարձակ քայլեր էին անում բեմադրելու դասական նմուշներ:

«Մեծ համբավ ուներ մեր թատերախումբը,—գրում է խմբի դերասան-նկարիչ Հ. Իսաբեկյանը:- Բավական է ասել, որ մենք հանդգնում էինք բեմադրել այնպիսի պիեսներ, ինչպես Տիրվանզա-



դեի «Նամուսը», Շիլլերի «Ավազակները», Պարոնյանի «Պաղտասար աղբարը», և ոչ միայն մեր բեմում, այլև պետական թատրոնի բեմում: Թատերական խմբի աշխատանքներին օգնում էր հանրապետության ժողովրդական արտիստ Միքայել Մանվելյանը: Մեր թատերական խմբի հիմնական սյունն էր Երվանդ Խալեյանը, որն անշուշտ դերասանական մեծ ձիրք ուներ և շատ լավ խաղում էր Սեյրանի, Կառլոսի դերերը... Աչքի էին ընկնում իրենց խաղով նաև Գրիգոր Մարգարյանը՝ Ֆրանցի դերում, Հրանտ Մանվելյանը, Վիլյամ Հայկազյանը՝ Պաղտասար աղբարի դերում, Ա. Ադոյանը՝ փաստաբան Օգսենի, իսկ Մարո Մուրադյանը՝ տիկին Անուշի դերում և շատ ուրիշներ»:

Երևանում գործող թատրոնի տիպի մի ուրիշ խումբ էլ Արմեն Արմենյանի գլխավորությամբ գործում էր Լենինականում: Այս խմբի մեջ մտնում էին Վիլյամ Հայկազյանը, որը 1922 թվականի հունիսից փոխադրվում է Երևան ու մտնում է Խալեյանի գլխավորած խումբը, Վարդան, Օնիկ և Խորեն Աճեմյանները, Վահան Դասոյանը, Ա. Պետրոսյանը և ուրիշներ:

Գավառներում այդ գործին մասնակից էին դարձընում մեծահասակ պատկոմներին, երբեմն նաև ուսուցիչներին: Այս տիպի խմբերը շատ-շատ էին, պատկոմական հրահանգիչները չէին հասցնում ղեկավարել նրանց աշխատանքները: Ամենատարածված ներկայացումը Վահան Ումրշատի գրած «Սեվուկ ուլիկ» օպերետն էր, որ երկար տարիներ չիջավ բեմից:

Ուշագրավ է Գորիսում լույս տեսնող «Կարմիր ռանչպար» լրագրի մի վկայությունը այն մասին, թե ինչ տպավորություն է թողնում ծնողի վրա պատկոմական ինքնագործ թատերախմբի ներկայացումը.

«Ահա եկանք նստոտեցանք, տեսանք, թե ծեր են փոքր խոխեքը, որոնք տարիների ընթացքում թատրոնի լին կարոտ, որոնք վեքի տալուց բացի ուրիշ պան չեն իմացել, մըհեկ հինչե՞ր են անում, հունց են խաղում, խոսում, մարդ գյուղում ա, թա տրանք քառասուն տարվա կյանքի շկոլան ավարտած դերասաններ լինեն»:

Նման վկայությունները բազմաթիվ են:

Այդ ասում է այն հսկայական դաստիարակչական աշխատանքների մասին, որ տանում էին Հեղկոմները (Հեղափոխական կոմիտեները) մեր երկրի աշխատավորության շրջանում, և այն մասին, թե որքան լուրջ կարևորություն և ուշադրություն էին հատկացնում թատերական արվեստը մասսաներին հասցնելու գործին:

Պատկոմական թատրոնը դեռ չէր դադարել գործելուց, որ 1929 թ. Երևանում ստեղծվեց Պատանի հանդիսատեսի պետական թատրոնը:




## ԾՆԱԶԿԱՆ ԽՐԱԽԻՑ ԱԶԱՏՎԱԾ ՄԱՐԴԸ



*Ավստրալիայի խոշոր նավահանգստային քաղաք Ադելաիդայից 55 կմ. հեռավորության վրա ստորջրյա որսորդության մրցություն էր անցկացվում, որին մասնակցում էր 1962 թվականի մրցումներում երկրորդ տեղը նվաճած, հրաշալի լողորդ և ստորջրյա որսորդ, 23-ամյա Ռոդնեյ Յոքսը: Այս անգամ նա հույս ուներ չեմպիոն դառնալ: Նա սովորել էր երեսուն մետր խորությամբ սուզվել ջրի տակ և մեկ րոպեից ավել շունչը պահել: Իսկ դա քիչ նշանակություն չուներ, որովհետև ստորջրյա որսորդությունը միջազգային կանոնների համաձայն, կատարվում էր միմիայն դիմակով և շնչախողովակով:*

*Մրցությունը սկսվեց առավոտյան ժամը 9-ին: Հինգ ժամվա ընթացքում մրցակիցները պարտավոր էին բռնել, որքան հնարավոր է, ձկների շատ տեսակներ: Արդյունքը կախված էր ավարի կշռից և բազմազանությունից: Ջրի տակ տեսանելիությունը այնքան էլ լավ չէր, որը և դժվարացնում էր ձկան որսը: Այնուհետև ժամը մեկը չեղած՝*

Ֆոքսը արդեն ափ էր հանել 14 տեսակի 27 կգ. ձուկ։ Մինչև մրցության ավարտը դեռ ժամուկես կար։ Կայուն հաղթանակ ապահովելու համար Ֆոքսը որոշեց ավար որոնել բաց ծովում, ուր փախել էին որսորդներից վախեցած ձկները։

Ափից մոտ մեկուկես կիլոմետր հեռավորության վրա, 18 մետր խորության մեջ նա նկատեց մի եռանկյունաձև ապառաժ, կողքին՝ լողաթևերը ծուլորեն շարժող, երեք խոշոր ձուկ, հավանաբար հանգստանում էին։ Որպեսզի ձկներին չվախեցնի (իսկ այդպիսի մեկ ձուկն էլ բավական էր հաղթանակն ապահովելու համար) Ֆոքսը որոշեց ոչ թե վերևից, այլ շրջանցելով ապառաժը, կողքից մոտենալ ձկներին։ Նա, որքան կարող էր, շատ օդ ներշնչեց ու սուզվեց...

Այժմ խոսքը տալիս ենք հենց իրեն՝ Ռոդնեյ Ֆոքսին.

«Ապառաժի մոտ ինձանից մի տասը մետր հեռավորության վրա ես տեսա ծովային մի հրաշալի խարակաձուկ։ Որպեսզի չվրիպեմ, մի քիչ էլ մոտեցա ու նշան բռնեցի։

Հանկարծ մի ինչ-որ հսկա բան խփեց իմ ձախ կողին, և ես կորցրի գիտակցությունս։

Սթափվելով, զգացի, որ մարմինս սեղմում են ինչ-որ հսկայական մամլակներ։ Դեմքիս դիմակ չկար, ու ես համարյա ոչինչ չէի տեսնում։ Մամլակը ավելի ուժեղ էր սեղմվում։ Ես փորձեցի ազատվել՝ ապարդյուն ջանքեր։ Չնայած դեռ ցավեր չէի զգում, բայց գլխի ընկա, որ այդ մամլիչը շնաձկան երախն է։

Ես նրան չէի տեսնում, սակայն գիտակցում էի, որ դա մի հսկայական շնաձուկ է։ Ձախ ձեռքով (աջս երախում էր) փորձեցի սեղմել գազանի աչքերը։ Շնաձուկը բաց արեց երախը, և ես ազատվեցի։ Սակայն աջ ձեռքս դեռ գտնվում էր նրա երախում, ես կատաղի շարժումներ էի անում, որպեսզի լրիվ ազատվեմ։ Անտանելի ցավերը ծվատում էին սիրտս, և չնայած դրան, ինձ հաջողվեց ձեռքս ազատել։ Արդեն շնչահեղձ էի լինում։ Գերագույն լարումով լողացի դեպի վեր։ Գլուխս ջրից դուրս եկավ, ես խորը շունչ քաշեցի։

Գիտեի, որ շնաձուկը ինձանից չի հեռանա։ Ես զգացի նրա լողաթևերի հպումը և կոնքիս մոտ նկատեցի նրա անհարթ մաշկը։ Այդ ժամանակ ես ձեռքերով ու ոտքերով փաթաթվեցի շնաձկան մարմնին, դա նրա ատամներից ազատվելու միակ միջոցն էր։ Շնաձուկը այս ու այն կողմ նետվելով իջավ ջրի խորքը։ Ես պոկվեցի նրանից ու նորից դուրս լողացի։ Իմ շուրջը ջուրը պղտորվել էր արյունից։

Ինձ հետ միաժամանակ դուրս լողաց և շնաձուկը։ Ինձանից մեկ մետրի վրա ես տեսա նրա սարսափելի երախը։ Փրկություն չկար։ Բայց հանկարծ... հրեշը փոխեց ուղղությունը և կլանեց այն պարկը, որի մեջ ես պահում էի ավարս։ Պարկը բարակ պողպատալարով ամրացված էր գոտիկիս։ Պողպատալարը ձգվեց, ու ես նորից հայտնվեցի ջրի տակ։ Ես փորձում էի արձակել գոտիս, սակայն ձեռքերս չէին ենթարկվում ինձ։ Եվ... նորից հրաշք. պողպատալարը կտրվեց։

Հետո ընկերներս պատմում էին, որ ես դուրս եմ եկել ջրի երես, բղավելով միայն մի բառ. «Շնաձո՜ւկը, շնաձո՜ւկը»։

Փրկության նավակը վերցրել էր Ֆոքսին։ Նա սոսկալի բզկտված էր։ Մեջքի և կրծքի վերքերից երևում էին ողերը և թոքը։ Ձախ ուսից կախված էին մկանների ծվենները։ Աջ ձեռքը կրծած էր մինչև ոսկորը։ Լողորդին փրկեց ռետինե ջրազգեստը, որը երևի դուր չէր եկել գազանին։

Ճանապարհային ոստիկանությունը դադարեցրեց մեքենաների երթևեկությունը դեպի Ադելաիդա, և 55 կիլոմետր տարածությունը վիրավորին տանող ավտոմեքենան անցավ ռեկորդային արագությամբ։

Ֆոքսը կենդանի մնաց։ Եվ, ամենազարմանալին այն է, որ նա չհրաժարվեց իր սիրած զբաղմունքից՝ ստորջրյա որսորդությունից։ «Մարդը դադարում է մարդ լինելուց, եթե ենթարկվում է վախին։ Ահա թե ինչու լավանալուց կես տարի հետո ես վերադարձա իմ վերջին որսորդության վայրը ու մտա ծով»։

## ԱՐՋՈՒԿ ՌԵՄԸ

Երկու տարի առաջ արջուկ Ռեմը ընդունվեց Պարատանսկայա երկրաբանական խումբը։ Վաղ մանկությունից, Կամչատկայում, դժվարին արշավների ժամանակ նա ուղեկցում էր ջոկատներին։ Այդ տարիների ընթացքում արջուկը ընկերացել էր երկրաբանների հետ։

Ջափահաս Ռեմը սիրում է անհանգիստ դեռուդեն շարժվել մլուլ տալ։ Նրան հաճախ կարելի է տեսնել արշավախմբում։ Ռեմը նույնիսկ թույլ է տալիս, որ հեծնեն ու քշեն իրեն։ Ամենից շատ նա ազատ ըմբշամարտն է սիրում։ Իհարկե, մարդը չի կարող արջի հետ գլուխ դնել, հաղթել նրան, բայց Ռեմը երբեմն կատակով զիջում է։ Իսկ մարտի վերջում, համարյա միշտ, նա անցնում է վճռական հարձակման։ Այդ ժամանակ հակառակորդը փախուստի է դիմում։

Ամեն անգամ հաղթանակից հետո Ռեմը պարգևատրվում է։ Նրա համար ամենահաճելի պարգևը խտացրած կաթն է։






ԹԱԳՈՒՀԻ ՀԱԿՈԲՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Արմենն իմ քեռին է. նա շատ ուժեղ է, դրա համար էլ երկրաբան է դարձել: Նա ողջ տարին շրջում է լեռներում ու ձորերում, երևի դրա համար էլ շատ քիչ է լինում տանը: Զարմանալին այն է, որ այդքան մեծ քեռի է, բայց գրպանները միշտ լիքն են գույնզգույն քարերով: Ազնիվ խոսք:

Աշոտը՝ իմ մեծ եղբայրը, ուզում է նույնպես երկրաբան դառնալ. ես, իհարկե, չեմ հավատում: Անցած տարի, երբ մենք Ստեփանավան ամառանոց էինք գնացել, փոխանակ մեզ հետ գնար ման գալու լեռներն ու ձորերը, ինչպես քեռի Արմենն է անում, նա նստում է ծառի տակ, կարդում հաստ-հաստ գրքեր ու խոշորացույցով զննում քեռի Արմենի տված գույնզգույն քարերը: Աշոտը ուր էլ որ գնա, իր քարերը միշտ հետն է տանում, իսկ երբ տանն ենք լինում, նա կողպում է դրանք իր արկղում, կարծես թանկարժեք ադամանդներ լինեն...

Մի անգամ քեռի Արմենը տուն եկավ, գրպանից հանեց մի մեծ գորշ քար, խորամանկորեն ժպտաց ու տալով Աշոտին, ասաց.

— Հապա գուշակիր:

Աշոտը վերցրեց քարն ու սկսեց լիզել... Ես զարմացած նայում էի նրանց: Աշոտը խնդրեց, որ ես էլ լիզեմ. չեմ հասկանում, ինչպե՞ս կարելի է լիզել կեղտոտ քարը... Բոլորն էլ, բացի փոքրիկ Համլիկից, բարձրաձայն ծիծաղում էին:

— Դավիթ,— վերջապես ծիծաղի միջից ասաց քեռի Արմենը,— սա աղ է, գետնի տակից հանված աղ: Մեր երկրաբանները Երևանի մոտերքում նավթ էին փնտրում, բայց աղի են հանդիպել: Իհարկե, հաճախ պատահում է, որ աղի շերտերից հետո է նավթ դուրս գալիս:

Ես հիացած էի քեռի Արմենի հնարամտությունից... ենթադրենք, որ այդ փոշոտ քարը, աղ է, չնայած հավատս չի գալիս. չէ՞ որ աղը շաքարավազի պես սպիտակ է:

Հետո մի բան էլ ինձ համար անհասկանալի է. քեռիս ասում է, թե Երևանը նստած է աղի վրա: Մի՞թե դա հնարավոր բան է, չէ՞ որ անձրևաջրերը ներծծվելով հողի մեջ, կարող են հալել ամբողջ աղը...

Իմ այս հարցի վրա ծիծաղեց քեռի Արմենն ու ասաց.

—Աղը գտնվում է շատ խորը, նույնիսկ մի քանի հարյուր մետր խորության վրա և հետո՝ աղն իր բնական վիճակում շատ ամուր է: Օրինակ, Ամերիկայի նահանգներից մեկում օդանավակայան տանող ճանապարհը քանիյոթ տարի առաջ կառուցել են աղի հաստ կտորներից: Սովետական Միությունում մենք ունենք անհատնում աղահանքեր, որտեղից աղը տանում են մշակելու: Դրա շնորհիվ էլ ստացվում է սպիտակ, շաքարավազի նման աղ: Աշխարհի ամենամեծ աղահանքերից մեկը գտնվում է Լեհաստանում: Նրա շերտի հաստությունը հասնում է 400 մետրի և տարածվում է 800 կիլոմետրի վրա: Իսկ Կանադայում,— ասաց նա՝ նայելով հայրիկին,— մի քանի տարի առաջ 700 մետր խորության տակ գտել են մի աղահանք, որն օրական 500 տոննա աղ է տալիս:

— Դու մոռացար ասել,— միջամտեց հայրիկը,— որ մենք աղ ենք ստանում ոչ միայն աղահանքերից, այլև լճերից ու ծովերից: Օրինակ, Անգլիայում աղահանքերը մեծ մասամբ գետնի տակ են գտնվում, իսկ Ամերիկայի Յուտա նահանգում գտնվում է աշխարհի ամենամեծ աղի լիճը: Այնտեղ աղը ջրի 6-րդ մասն է կազմում, իսկ ծովի աղը ջրի երեք տոկոսն է միայն:

Հայրիկը դեռ խոսքը չէր վերջացրել, Աշոտը մեջ ընկավ ու սկսեց պատմել, որ աղը դարեր առաջ շատ թանկ է եղել և հենց «սելրի» անգլերեն նշանակում է աշխատավարձ, իսկ անգլերեն բառն էլ իր հերթին գալիս է «սոլարիում» լատինական բառից, որը նշանակում է փող՝ աղի համար, այսինքն այն դրամը, որ տալիս էին Հռոմում զին-

վորներին աղ գնելու համար։ Հռոմեացիներն ունեին այսպիսի մի դարձված. «Աղ կա», որը նշանակում էր ընկերական սերտ կապեր հաստատել։ Հենց այստեղից էլ գալիս է թանկագին հյուրին աղ ու հացով ընդունելու սովորույթը։ Իսկ միջին դարերում աղն է որոշել մարդկանց դասակարգային աստիճանը։ Միայն բարձր դասի ներկայացուցիչներն են իրավունք ունեցել սեղանի այն մասում նստել, որտեղ դրված է եղել աղամանը։ Օրինակ, հնում ամենամեծ պատիժը համարվել է այն, որ մարդուն զրկել են աղից, և նա աստիճանաբար մահացել է։ Չէ՞ որ մարդը օրական պետք է օգտագործի 4—8 գրամ աղ։ Առանց աղի չի կարելի դիմանալ մեկ ամսից ավելի։ Իսկ տաք երկրներում աղի պահանջը ավելի շատ է զգացվում։ Մարդ շատ քրտնում է, և քրտինքի միջոցով շատ աղ է կորցնում օրգանիզմը։

Բոլորը հիացած լսում էին Աշոտին, նույնիսկ քեռի Արմենը։ Եվ որտեղի՞ց Աշոտը գիտի այս բոլորը, մտածեցի ես. չէ, մի օր նա անպայման գիտնական կդառնա, այ կտեսնեք։ Գուցե գույնզգույն քարերն էլ ինձ զիջի, գիտնականի ինչի՞ն են պետք այդ քարերը…

Մենք այնպես էինք տարվել աղի պատմությամբ, որ չնկատեցինք, թե ինչպես Համիկը իր փոքրիկ թաթիկները մտցրել աղամանի մեջ ու մեծ ախորժակով լիզում է մատները։ Դե մեր Համիկը շատ փոքր է, չի հասկանում, որ չափից ավելի աղ օգտագործելը վնաս է, իսկ պահանջված չափով աղը անհրաժեշտ է կյանքի համար։

Նույնիսկ գյուղատնտեսության մեջ փորձեր են կատարել ճակնդեղի բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ. աղը չափավոր տալու դեպքում մեծ արդյունքների են հասել։

— Հիմա աղը քանի գնում, ավելի ու ավելի է օգտագործվում մեր կյանքում,— շարունակեց Աշոտը,— պահածոների ու կաշվի գործարաններում և ընդհանրապես արդյունաբերության մեջ աղը խիստ անհրաժեշտ է։ Աղը պետք է ապակու պատրաստման, ալյումինի, այլ մետաղների հալեցման գործում։ Շատ մեծ է նրա դերը քիմիայի ասպարեզում։

Ես այլևս չհամբերեցի։ Ախր եթե աղն այդքան անհրաժեշտ է և շատ է օգտագործվում, կարող է մի օր սպառվել։ Համ էլ ինչո՞ւ է այդքան էժան։

— Ապրես, Դավիթ,— ասաց քեռի Արմենը,— շատ ճիշտ նկատեցիր։ Բայց իմացիր, աղի մշակումը շատ էժան է նստում, հետո դու զուր ես վախենում, որ աղահանքերը կարող են վերջանալ, աղի լճերը ցամաքել։ Նախ դրանք շատ-շատ են և եթե դրանք մի օր վերջանան էլ, օգնության կգան ծովերն ու օվկիանոսները։

— Դավիթ, դասերդ պատրաստե՞լ ես,— հանկարծ հարցրեց մայրիկը։

— Ա՜խ, էլի մայրիկը, չի թողնում, որ մարդ հետաքրքիր բաներ լսի։

— Մի՛ ծռմռի դեմքդ, Դավիթ,— ասաց քեռի Արմենը,— եթե լավ չսովորես, հետաքրքիր բաներ երբեք չես իմանա, գուցե ժամանակն է Դավիթին էլ գունավոր քարեր նվիրել։ Ի՞նչ ես ասում, Աշոտ, հը՞։

Աշոտն ուղղեց ակնոցը։ Նա միշտ այդպես է անում, երբ հուզվում է։ Դե, Աշոտը անտարբեր չի կարող լինել, երբ խոսքը գույնզգույն քարերի մասին է, բայց նա շատ բարի է, ազնիվ խոսք, շատ բարի։



Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։

ՎՖ 06523։ Պատվեր՝ 1284։ Տպաքանակ՝ 42000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 15/IX, 1967 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։

Գինը՝ 10 կ.




## Ո՞Վ Է ՈՒԺԵՂԸ

Նախ ներկայացնենք մեր չորքոտանի մարզիկներին։ Առաջինը՝ շոտլանդական տերյեր Տոպսը։ Նրա կողքին Բոցարն է, սովորական բակապահ։ Հաջորդը՝ պուդել Խուճուճը։ Վերջինը՝ Շպից-Անդադարը։

Նրանք պիտի մրցեն իրար հետ՝ ձգեն պարանօղակը։

Առաջին գոտեմարտը՝ երկուսը մեկի դեմ։ Կեցցե՛ս, Տոպս, նա ոչ միայն չի զիջում իր հակառա-











70 ՏԱՐԻ






## ՌԵԲՈՒՍ

Այս ռեբուսներում կարդացեք սովետահայ տաղանդավոր բանաստեղծ Ե. Չարենցի երկու ճանրահայտ պոեմների վերնագրերը:

*Կազմեց Տ. ՂԱՆԴԻԼՅԱՆԸ*

*կողմերին, այլև ընդհակառակը՝ հաղթում է: Երկրորդ գոտեմարտը՝ երկուսը երկուսի դեմ, բայց կողմերից ոչ մեկը առավելության չի հասնում:*

*Ահա և երրորդ գոտեմարտը, նորից երկուսը երկուսի դեմ, բայց արդեն փոփոխված կազմով: Եվ հանդիպման արդյունքը կասկած չի առաջացնում: Աջ կողմը բացահայտ ուժեղ է:*

*Իսկ այժմ փորձեք պատասխանել հետևյալ հարցերին. 1. Զորս շնիկներից ո՞րն է ամենից ուժեղը: 2. Ո՞ւմ կշնորհեք երկրորդ և երրորդ տեղերը: 3. Ո՞վ հանդիսացավ մրցության ամենաուժեղ մասնակիցը:*

*Ապացուցեք ձեր լուծման ճշտությունը:*




## Երաժշտական վիկտորինա

### ՈՎ ԷՐ ՆԱ

*(ճիշտ լուծման համար՝ 18 միավոր)*

1832 թվականին Միլանի կոնսերվատորիայի դիրեկտորին ներկայացավ մի երիտասարդ և խնդրեց, որ իրենից ընդունելության քննություն վերցնեն: Նա դաշնամուրի վրա նվագեց իր ստեղծագործություններից մեկը:

Մի քանի օրից հետո նա ստացավ հետևյալ պատասխանը. «Թողեք կոնսերվատորիա ընդունվելու մտադրությունը և ձեզ դասատու ընտրեք քաղաքի երաժիշտներից որևէ մեկին»: Տասնամյակներ հետո Միլանի կոնսերվատորիան մեծ պատիվ համարեց իրեն կոչել այդ երաժշտի անունով: Ո՞վ էր նա:

### Ո՞Ր ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*(ճիշտ լուծման համար՝ 10 միավոր)*

Աշխարհահռչակ կոմպոզիտոր Արամ Խաչատրյանը ստեղծել է 150-ից ավելի երաժշտական գործ, որոնց թվում՝ 3 սիմֆոնիա, 3 բալետ, 5 գործիքային համերգ՝ սիմֆոնիկ նվագախմբի հետ, գրել է երաժշտություն 25 կինոնկարի և 16 դրամատիկական ներկայացումների համար:

Արամ Խաչատրյանը չորս անգամ արժանացել է պետական և մեկ անգամ Լենինյան մրցանակի: Ո՞ր ստեղծագործությունների համար է նա արժանացել այդ բարձր պարգևներին:

*Առաջարկ՝ ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

# Բաժանորդագրվեցե՛ք

## և „ՊԻՈՆԵՐ“ „ԾԻԾԵՌՆԱԿ“ ԱՄՍԱԳՐԵՐԻՆ




### ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր ԵՎ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵ՛Ր

Սկսվել է ձեր ամսագրերի՝ «Պիոների» և «Ծիծեռնակի» 1968 թվականի բաժանորդագրությունը։

1968 թվականին ձեր սիրելի ամսագրերը լույս կտեսնեն ավելի շքեղ և ավելի հարուստ բովանդակությամբ։ Ամսագրերի էջերում դուք կգտնեք հետաքրքիր պատմվածքներ ու հեքիաթներ, զրույցներ ու ակնարկներ, գունազարդ նկարներ ու գծագրեր։ Դուք կկարդաք ձեր պիոներական աշխատանքներին օգնող շատ նյութեր, ինչպես նաև նյութեր գիտության, տեխնիկայի և արվեստի նորությունների մասին։ Ամսագրերի էջերում տպագրված վերատպություններով դուք կհարստացնեք ձեր անձնական և դպրոցի կոլեկցիաները։

Երկու ամսագրերում էլ առատ նյութեր կտրվեն ձեր ժամանցը լավ անցկացնելու համար։

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ «ՊԻՈՆԵՐ» ԵՎ «ԾԻԾԵՌՆԱԿ» ԱՄՍԱԳՐԵՐԻՆ։**

Բաժանորդագրության պայմաններն են՝

| «ՊԻՈՆԵՐ» | | «ԾԻԾԵՌՆԱԿ» | |
|---|---|---|---|
| 3 ամիսը | 30 կ. | 3 ամիսը | 30 կ. |
| 6 ամիսը | 60 կ. | 6 ամիսը | 60 կ. |
| մեկ տարին | 1 ռ. 20 կ. | մեկ տարին | 1 ռ. 20 կ. |

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ